Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

1

ՀՈՒՆՎԱՐ 1961



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ







# ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ՀԱՂԹԱԿԱՆ ԵՐԹԸ

Նոր տարվանից մեկ շաբաթ առաջ իր բեղմնավոր աշխատանքն ավարտեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի վեցերորդ սեսիան, որը քննարկեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1961 թվականի պետական պլանի, ՍՍՌՄ 1961 թվականի պետական բյուջեի և 1959 թվականի պետական բյուջեի կատարման, Սովետական Միության միջազգային դրության ու արտաքին քաղաքականության և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերի հաստատման մասին պետական կարևորագույն հարցերը։

Սեսիան ցույց տվեց, որ յոթնամյակը ընթանում է հաղթական երթով։ Օրակարգի առաջին հարցի մասին զեկուցեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի տեղակալ, ՍՍՌՄ Պետպլանի նախագահ, դեպուտատ Վ. Ն. Նովիկովը։ Նա նշեց, որ փայլուն կերպով կենսագործվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման վերաբերյալ հարազատ Կոմունիստական պար-





տիայի հոյակապ ծրագիրը։ Անցյալ տարի արդյունաբերության և տնտեսության մյուս ճյուղերի զարգացումը զգալիորեն գերազանցեց ժողովրդատնտեսական պլանը։ Միայն անցած մեկ տարում մեր երկրի արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը մեծացավ մոտավորապես 10 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի աճման սահմանված առաջադրանքները գերակատարել են միութենական բոլոր ռեսպուբլիկաները և համարյա բոլոր ժողտնտխորհուրդները։ Անցած տարում ծանր արդյունաբերության արտադրանքի շատ տեսակների արտադրության գծով բացարձակ աճը իր ծավալով գերազանցեց նախորդ տարիների ամենաբարձր ցուցանիշները, սպառման առարկաների արտադրությունը 1960 թվականին ավելացավ 8 տոկոսով։

Անցյալ տարի վիթխարի հաջողություններ են ձեռք բերվել մեր երկրի կոլտնտեսություններում և սովխոզներում։ 1960 թվականին ՍՍՌՄ-ում կոլտնտեսություններն ու սովխոզները ցանքատարածությունները ընդլայնեցին 7 միլիոն հեկտարով։ Զեկուցողը փաստեր է բերում նաև այն մասին, թե ինչպես երկրում արտադրվել և գնվել է 1959 թվականից շատ հացահատիկ, չնայած

մի շարք շրջաններում եղած աննպաստ եղանակին։

Իբրև անցյալ տարվա աշխատանքի արդյունք սեսիայում նշվեց, որ երկրում կապիտալ շինարարության մեծ ծրագիր է կատարվել։ 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, պետական կապիտալ ներդրումների ծավալը մեծացել է 28 միլիարդ ռուբլով։ Յոթնամյակի առաջին երկու տարում գործարկվել է ավելի քան 2 հազար նոր, խոշոր ձեռնարկություն։

Մեր մեծ երկրի աշխատավորների ձեռք բերած փայլուն հաղթանակներից մեկն էլ այն է, որ Սովետական Միությունը արդեն այժմ ԱՄՆ-ի առջևից է ընթանում արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրանքի մի շարք կարևորագույն տեսակների արտադրության ծավալով, այդ թվում երկաթի հանքաքարի արդյունահանմամբ, փայտամթերմամբ, մագիստրալային էլեկտրաքարշերի ու ջերմաքարշերի, բրդե գործվածքների, շաքարի, յուղի, կաթի և ուրիշ ապրանքների արտադրությամբ։

Սեսիայում գոհունակությամբ նշվեց, որ արդի կապիտալիստական աշխարհի գլխավոր միջնաբերդի՝ ԱՄՆ-ի հետ տնտեսական



մրցության մեջ Սովետական Միությունը վստահորեն նվաճում է հաղթանակը։

Մեր երկրում ավելի մեծ և ավելի հիաքանչ աշխատանք է կատարվելու 1961 թվականին, որի մասին այնքան հանգամանորեն խոսվեց սեսիայում։ Ճիշտ է ասված, որ մենք ապրում ենք հիանալի ժամանակներ, երբ իրականանում են ամենահանդուգն, ամենահամարձակ երազանքները։ Յոթնամյա պլանը, որի կատարման համար ոգեշնչված աշխատում են սովետական մարդիկ, մեկն է այդպիսի մեծագործություններից։ Օրինակ, նախատեսվում է միայն այս տարի երկրի արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալը անցյալ տարվա համեմատությամբ մեծացնել 8,8 տոկոսով, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 9,5 տոկոսով, իսկ սպառման առարկաների արտադրությունը՝ 6,9 տոկոսով։

Յոթնամյակի երրորդ տարում խոշոր աշխատանք է կատարվելու գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Այդ ուղղությամբ սեսիայում պետական կապիտալ ներդրումները սահմանվեցին 23 միլիարդ ռուբլու չափով՝ գործող գների մասշտաբով, անցյալ տարվանից 12,8 տոկոսով շատ։

Արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման հետ միասին մեծ ուշադրություն է դարձվելու տրանսպորտի և կապի զարգացմանը, կապիտալ շինարարությանը։ Սեսիան արևելյան շրջանների ժողովրդական տնտեսության զարգացմանը հատկացրեց ՍՍՌՄ-ի բոլոր կապիտալ ներդրումների աճման կեսից ավելին։

Աշխատավորների պահանջմունքները հագուստեղենի, կոշկեղենի և պարենային ապրանքների նկատմամբ ավելի լավ բավարարելու նպատակով 1961 թվականին բուռն թափով զարգանալու է թեթև և սննդի արդյունաբերությունը։

Ն. Ս. Խրուշչովի առաջարկությամբ որոշված է գերպլանային կուտակումների հաշվին, ի լրումն յոթնամյակի կոնտրոլ թվերի առաջադրանքների, լրացուցիչ կարգով զգալի միջոցներ հատկացնել թեթև արդյունաբերության զարգացմանը։ Այս տարի ամբողջ կարողությամբ կգործարկվի թեթև արդյունաբերության 29 նոր ձեռնարկություն և կսկսվի ևս 32 ձեռնարկությունների կառուցումը։ Նախատեսվում է 1961 թվականին բոլոր տեսակների գործվածքների արտադրությունը հասցնել 8 միլիարդ 148 միլիոն գծամետրի, տրիկոտաժեղենինը՝



577 միլիոն կտորի և կաշվե-կոշկեղենինը՝ ավելի քան 440 միլիոն զույգի։ Այս տարի անցյալ տարվա համեմատությամբ պարենային ապրանքների թողարկումը ընդհանուր առմամբ աճելու է 7,7 տոկոսով։ Բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով կաճեն 5 տոկոսով։ Կբարելավվի բնակչության սպասարկումը առևտրի գծով։

Ինչպես միշտ, այնպես էլ այս տարի աշխատավորներին գեղեցիկ ու հարմարավետ բնակարաններով բավարարելու ուղղությամբ աչքի ընկնող աշխատանք է կատարվելու մեր երկրում։ Նախատեսված է 1961 թվականին պետական կապիտալ ներդրումների և բանվորների ու ծառայողների անձնական խնայողությունների հաշվին կառուցել ավելի քան 96 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր։ Այդ նշանակում է, որ միայն մեկ տարում 9—10 միլիոն մարդ կստանա նոր, բարեկարգ բնակելի տարածություն։ Կկառուցվեն ավելի քան 1.100 նոր հիվանդանոց ու պոլիկլինիկա, ավելի քան հազար դեղատուն։

Դեպուտատները սեսիայում մեծ գոհունակությամբ քննարկեցին ՍՍՌՄ 1961 թվա-

կանի պետական բյուջեի և 1959 թվականի պետական բյուջեի կատարման մասին հարցը, որի վերաբերյալ զեկուցեց ՍՍՌՄ ֆինանսների մինիստր, դեպուտատ Վ. Ֆ. Գարբուզովը։ Նշվեց, որ մեր պետությունն ունի այնպիսի ֆինանսներ և այնպիսի բյուջե, որոնց ամրությանն ու կայունությանը կարող է նախանձել ուզած կապիտալիստական պետությունը, որովհետև մեծ մասամբ նրանց պետական բյուջեները որպես կանոն դեֆիցիտային են։ ՍՍՌՄ 1961 թվականի պետական բյուջեն, որը կազմված է գների նոր մասշտաբի և ռուբլու նոր կուրսի հիման վրա, հանդիսանում է սովետական ֆինանսական սիստեմի ամրության ևս մեկ վկայությունը՝ ՍՍՌՄ 1961 թվականի պետական բյուջեն եկամուտների գծով սահման հաստատել է 78 միլիարդ 993 միլիոն 741 հազար ռուբլի գումարով, ծախսերի գծով՝ 77 միլիարդ 589 միլիոն 829 հազար ռուբլի։ Հետևաբար ծախսերի նկատմամբ եկամուտների գերազանցումը կկազմի 1 միլիարդ 403 միլիոն 912 հազար ռուբլի։

Ծանր արդյունաբերության, շինարարական ինդուստրիայի, թեթև և սննդի արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, բնակարանային-կոմունալ



տնտեսության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հետագա զարգացման համար հատկացված է 33 միլիարդ 907 միլիոն 835 հազար ռուբլի։

Այս տարի մեր երկրի դպրոցների, տեխնիկումների, բարձրագույն և մյուս ուսումնական հաստատությունների, գիտահետազոտական հիմնարկների, գրադարանների, ակումբների, թատրոնների, մամուլի, ռադիոհաղորդման և լուսավորության ու կուլտուրայի մյուս միջոցառումների, հիվանդանոցների, մանկամսուրների, սանատորիաների և առողջապահության ու ֆիզկուլտուրայի մյուս հիմնարկների, կենսաթոշակների ու նպաստների համար սեսիայի կողմից ընդունված օրենքով կծախսվի 27 միլիարդ 152 միլիոն 242 ռուբլի։

Երկրի պաշտպանության համար հատկացված է 9 միլիարդ 255 միլիոն 450 հազար ռուբլի։ Այդ ցույց է տալիս, որ մեր երկրում տարեցտարի նվազում են զինված ուժերի պահպանության ծախսերը, որովհետև Սովետական Միությունը ձգտում է խաղաղության, խաղաղ գոյակցության և ոչ թե պատերազմի։ Օրինակ, մեր երկրում 1955 թվականի բյուջեում պաշտպանության ծախսերի տեսակարար կշիռը եղել է 19,9

տոկոս, 1960 թվականին՝ 12,9 տոկոս, իսկ 1961 թվականին այն կլինի ընդամենը 11,9 տոկոս։

Միութենական ռեսպուբլիկաների 1961 թվականի պետական բյուջեները եկամուտների և ծախսերի գծով սահմանված է 42 միլիարդ 861 միլիոն 341 հազար ռուբլի։

Հայկական Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկայի պետական բյուջեն եկամուտների ու ծախսերի գծով սահմանված է 366 միլիոն 959 հազար ռուբլի։

ՍՍՌՄ-ում այս տարվա եկամուտների 91,2 տոկոսը բյուջե կմտնի պետական ու կոոպերատիվ ձեռնարկություններից և կազմակերպություններից։ Բնակչությունից բյուջե մտնող գումարների տեսակարար կշիռը կկազմի սոսկ 8,8 տոկոս, իսկ նրանցից գանձվող հարկերի մուտքերը՝ ընդամենը 7 տոկոս։ Հայտնի է, որ կապիտալիստական պետություններում բնակչությունից գանձվող հարկերը կազմում են բյուջեի եկամուտների գերակշռող մասը։ Օրինակ, ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում, ԳՖՌ-ում հարկային մուտքերը (առանց կորպորացիաներից գանձվող եկամտահարկերի) ներկայումս հավասար են նրանց բյուջեների բոլոր եկամուտների 70 և ավելի տոկոսին։ Կապիտալիստական երկրներում, հատկապես ԱՄՆ-ում ժողովրդական միջոցների մեծ մասը՝ 60—70 տոկոսը, ծախսվում է ռազմական նպատակների համար։



Քննարկելով Սովետական Միության միջազգային դրության և արտաքին քաղաքականության մասին հարցը, սեսիան նշեց, որ Սովետական Միությունը և ամբողջ սոցիալիստական լագերը, ինչպես նաև ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը և խաղաղության ուժերը բուն իմպերիալիստական երկրներում խափանում են խաղաղության թշնամիների դավերը, որ մեր երկիրը վստահորեն ընթանում է Լենինի մեծ պարտիայի ու նրա Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ, կոմունիզմի հաղթանակի, ժողովուրդների խաղաղության անխոնջ մարտիկ ընկ. Ն. Ս. Խրուշչովի ղեկավարությամբ, որի անսպառ եռանդը ոգեշնչում է յուրաքանչյուր սովետական մարդու։

Սեսիայում ջերմ հավանության արժանացան զեկուցող, ՍՍՌՄ արտաքին գործերի մինիստր Ա. Ա. Գրոմիկոյի այն խոսքերը, որ մեր ժամանակներում դիվանագիտության լենինյան ոճի կիրառման հիանալի օրինակ են ընկեր Ն. Ս. Խրուշչովի ելույթները

ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի 15-րդ սեսիայում։ «ՄԱԿ-ի ամբիոնից,— ասաց նա,— հնչեց ճշմարտության և ամենավսեմ ու ամենաազնիվ հումանիզմի ձայնը։ Սովետական կառավարության ղեկավարի բոլոր ելույթները, որ պաշտպանեցին սոցիալիստական մյուս երկրների առաջատար պետական գործիչները, որոնք գլխավորում էին այդ երկրների պատվիրակությունները, բովանդակում էին այնպիսի առաջարկություններ, որոնք խորապես հուզում են բոլոր երկրների ժողովուրդներին»։ Այնուհետև զեկուցողը համառոտակի պատմում է, թե ինչպես Գլխավոր Ասամբլեայի սեսիայում տեղի ունեցավ երկու լագերների, երկու աշխարհների գոտեմարտ՝ իրենց քաղաքական ու բարոյական դիրքերի պաշտպանության համար մղվող պայքարում։ Լագերներից մեկը՝ սոցիալիստական երկրների լագերը, կոչ է արել, որ ՄԱԿ-ի դրոշի վրա գրվեն խաղաղություն և բոլոր պետությունների լիակատար զինաթափում՝ ռազմական տենդագին պատրաստությունների փոխարեն, ազատություն՝ գաղութային կապանքների փոխարեն, դպրոցներ ու հիվանդանոցներ՝ ատոմային և ջրածնային ռումբերի փոխարեն։ Մյուս լագերը փորձել է



զինաթափումը նենգափոխել սպառազինության վերահսկողությամբ, որը գործնականում նշանակում է շարունակել սպառազինությունների մրցավազքը, էլ ավելի մեծ զարկ տալ պետությունների մրցությանը զենքի ամենաահեղ տեսակների՝ միջուկային ռումբերի, հրթիռների արտադրության ասպարեզում։

Սեսիայում դեպուտատները ջերմորեն ողջունեցին նախկին գաղութների տեղում նոր ինքնուրույն պետությունների երևան գալը Աֆրիկայում։ Հավատարիմ մնալով բոլոր ժողովուրդների ազգային իրավունքների հարգման լենինյան քաղաքականությանը, Սովետական կառավարությունը անվերապահորեն ճանաչեց նրանց սուվերենությունը և պատրաստակամություն հայտնեց նրանց հետ հարաբերություններ զարգացնել լիակատար իրավահավասարության հիմունքներով։

Զեկուցողը, ելույթ ունեցող դեպուտատները միաժամանակ դատապարտեցին Կոնգոյում ՄԱԿ-ի ապարատի անվայել դերը՝ Գլխավոր քարտուղարի ղեկավարությամբ, Ալժիրի ժողովրդի դեմ մղվող գաղութատիրական պատերազմը, ԱՄՆ-ի ղեկավարությամբ ՍԵԱՏՕ-ի բլոկի կողմից Լաոսի ժո-

ղովրդի դեմ կատարվող ռազմական ինտերվենցիան, ռեոլյուցիոն Կուբային խեղդելու ամերիկյան իմպերիալիստների փորձերը։

Զինաթափման պրոբլեմների վերաբերյալ սեսիայում նշվել է, որ ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ կառավարությունը թե ժամանակ, թե ուժեր չեն խնայում նրա լուծմանը նըպաստելու և հորիզոնից պատերազմի ամպերն ընդմիշտ վանելու համար և որ այժմ Սովետական Միության միջազգային դիրքերը, միջազգային հեղինակությունը ամուր են, ինչպես երբեք։ Դա ուղղակի արդյունքն է այն աննախընթաց հաջողությունների, որ սովետական ժողովուրդը ձեռք է բերել մեր Հայրենիքի կյանքի տառացիորեն բոլոր ոլորտներում։ Սովետական կառավարությունը այսուհետև նույնպես, առանց ջանքեր խնայելու, նույնքան հետևողականորեն կպաշտպանի խաղաղության գործը, որը այնպես թանկ է կոմունիստական հասարակարգի լուսավոր շենքի կառուցմամբ զբաղված մեր երկրի ժողովրդի համար։

Վերջում սեսիան հաստատել է ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ և վեցերորդ սեսիաների միջև ընկած ժամանակամիջոցում Գերագույն Սովետի Նախագահության կողմից տրված հրամանագրերը։



# ՈՎ ՉԻ ԱՇԽԱՏՈՒՄ, ՆԱ ՉՊԵՏՔ Է ՈՒՏԻ

Դոցենտ Արշ. Թովմասյան

Կոմունիստական պարտիայի և նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի իմաստուն ղեկավարությամբ սովետական ժողովուրդը պատմականորեն անհավատալի կարճ ժամանակամիջոցում համաշխարհային մասշտաբի հսկայական հաջողություններ ձեռք բերեց։ Նա ստեղծեց իր հզոր սոցիալիստական պետությունը, կառուցեց սոցիալիստական հասարակարգ։ Նրա հերոսական ջանքերով երկիրը դարձավ ծանր արդյունաբերության և բարձր զարգացած սոցիալիստական գյուղատնտեսության երկիր։ Նրա հանճարով նվաճվում է տիեզերքը։ Գնալով ավելի ու ավելի է բազմապատկվում մեր Հայրենիքի հարստությունը, շեշտակի արագությամբ մեծանում են բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի անձնական աշխատանքով ձեռք բերվող եկամուտները, անընդհատ բարելավվում է նրանց նյութական բարեկեցությունը։

Այս բոլորը ոգեշնչում է սովետական
մարդկանց և նրանց մղում աշխատանքային
նորանոր սխրագործությունների։ Սովետա-
կան մարդիկ քաջ գիտեն, որ մեր պետու-
թյան հզորության ու ժողովրդական մասսա-
ների բարեկեցության հիմնական աղբյուրն
աշխատանքն է։ ՍՍՌՄ-ում աշխատանքը
պատվի գործ է, փառքի, հերոսության ու
արիության գործ։ «Աշխատանքը ՍՍՌՄ-ում
աշխատանքի ընդունակ յուրաքանչյուր քա-
ղաքացու պարտականությունը և պատվի
գործն է՝ համաձայն «ով չի աշխատում, նա
չի ուտում» սկզբունքի», ասված է ՍՍՌՄ
և միութենական ու ավտոնոմ ռեսպուբլի-
կաների կոնստիտուցիաներում։ ՍՍՌՄ-ում
իրականացված է սոցիալիզմի սկզբունքը՝
«յուրաքանչյուրից ըստ նրա ընդունակու-
թյան, յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշխա-
տանքի»։ Այդ է պատճառը, որ նրանք անօ-
րինակ ոգևորությամբ ու խանդավառու-
թյամբ աշխատել ու աշխատում են գործա-
րաններում, ֆաբրիկաներում, հանքահորե-
րում, նորակառույցներում, կոլտնտեսու-
թյուններում, սովխոզներում։

Բայց մեզ մոտ դեռևս կան առանձին մար-
դիկ, որոնք արատավորում են սովետական
քաղաքացու բարձր անունը, անազնիվ վերա-



բերմունք են ցուցաբերում իրենց հասարա-
կական պարտքի նկատմամբ, չեն աշխա-
տում և ապրում են անաշխատ եկամուտով։
Նրանք ոտնահարում են սոցիալիստական
համակեցության կանոնները և իրենց այդ
վարքագծով արժանանում մեր հասարա-
կության արգահատանքին ու ատելությանը։
Դրանք մարդիկ են, որոնք գերադասում են
չմասնակցել հանրային հարստության
ստեղծման գործին, հեռու փախչել ժողովրդի
ստեղծագործական աշխատանքից։ Ժողո-
վուրդը իրավամբ նրանց անվանել ու ան-
վանում է պարազիտներ, ծրիակերներ։

Սովետական պետության և կոմունիստա-
կան պարտիայի հանճարեղ առաջնորդ Վ. Ի.
Լենինը ծրիակերներին ու պորտաբույծնե-
րին համարում էր սոցիալիզմի վտանգա-
վոր թշնամիներ։ Նա մատնանշում էր, որ
այդ տարրերի դեմ պետք է պայքարել, ոչ
միայն դաստիարակության և հասարակա-
կան ներգործության միջոցներով, այլև պե-
տական հարկադրանքի միջոցներով։

ՍՍՌՄ քաղաքացիները ապահովված են
աշխատանքով։ Նրանք ունեն աշխատանքի
իրավունք և դա նրանց կոնստիտուցիոն ի-
րավունքն է։ Նրանց աշխատանքը վարձա-
տրվում է կատարված աշխատանքի քանա-

կի ու որակի համապատասխան։ Աշխա-
տանքի իրավունքն ապահովվում է ժողո-
վըրդական տնտեսության սոցիալիստական
կազմակերպմամբ, սոցիալիստական հա-
սարակության արտադրողական ուժերի ան-
շեղ աճմամբ, տնտեսական ճգնաժամերի
հնարավորության վերացմամբ և գործազըր-
կության լիկվիդացմամբ։ Ջրիակերներն ու
պորտաբույծները այն աշխատունակ առան-
ձին տարրերն են, որոնք գիտակցաբար
շօգտվելով իրենց կոնստիտուցիոն հիմնա-
կան իրավունքից՝ աշխատանքի իրավուն-
քից, ոտնահարում են «ով չի աշխատում,
նա չի ուտում» ազնիվ սկզբունքը և ապրում
են պետության, հասարակության կամ ի-
րենց մերձավորների հաշվին։

Սոցիալիզմը և աշխատանքը միմյանցից
անբաժանելի հասկացողություններ են։
Ամեն կարգի դատողություն կամ վարքա-
գիծ այն մասին, որ մեզ մոտ հաղթել է
սոցիալիզմը և մենք գտնվում ենք դեպի
կոմունիզմ տանող ճանապարհին, որ մեզ
մոտ գիտության ու տեխնիկայի զարգացման
շնորհիվ, սովետական ժողովրդի հերոսա-
կան աշխատանքի շնորհիվ ապրուստի մի-
ջոցները աճում են հեքիաթային արագու-
թյամբ, ուստի և կարելի է դադարել աշխա-



տելուց ու ոտքերը փռելով անհոգ կերպով
ապրել, ոչ մի ընդհանուր բան չունեն մարք-
սիզմ-լենինիզմի հետ։ Ընդհակառակը, սո-
ցիալիզմը և կոմունիզմը հիմնված են աշ-
խատանքի վրա։ Սոցիալիստական (կոմու-
նիստական) հասարակության քաղաքացին
նախ և առաջ պետք է ազնիվ, անձնվեր ու
ձեռներեց աշխատող լինի։

Հանրային աշխատանքից խուսափող
ձրիակեր տարրերը մեր երկրում իրենց
ապրուստի միջոցները, այն էլ հաճախ խիստ
առատ միջոցները, «հայթայթում» կամ
«ձեռք են բերում» ամենատարբեր միջոցնե-
րով ու եղանակներով։ Փորձենք մատնանշել
այդ միջոցներից ու եղանակներից հիմնա-
կանները։ Ամենից առաջ նրանցից շատերը
կատարում են գույքային բնույթի զանա-
զան հանցագործություններ։ Այդ հանցա-
գործությունների վերջնական նպատակը պե-
տական կամ հանրային գույքի կամ թե քա-
ղաքացիների անձնական գույքի հափշտա-
կումն է։ Մեր ռեսպուբլիկայի դատական
պրակտիկային հարյուրավոր դեպքեր են
հայտնի, երբ սպեկուլյացիայով, վաճառվող
ապրանքների գները խախտելով, պաշտո-
նական դիրքը չարաշահելով, կաշառակե-
րությամբ, պետական և հանրային գույքի

գողությամբ կամ յուրացմամբ, քաղաքացիների գույքի կողոպտումով, ավազակային կամ բանդիտական հարձակումներով, չթույլատրված զբաղմունքներով զբաղվելով, գողացված կամ ապօրինաբար ձեռք բերված ապրանքների առուծախով, կրոնի ու պաշտամունքի քողի տակ հանցավոր կերպով գործելով, հեքիմությամբ զբաղվելով և նրման այլ եղանակներով ու ձևերով հանցավոր տարրերը ձրիակերության համար նյութական հիմք են ստեղծել:

Ահա Մ. Բ-յանը: Սա Երևանի բնակիչ է, ֆիզիկապես միանգամայն առողջ և աշխատունակ: Ունի սեփական բնակարան՝ ընդարձակ պարտեզով: Ընտանիքը բաղկացած է իրենից բացի 5 շնչից, որոնցից 3-ը նույնպես աշխատունակ մարդիկ են: Այսպիսով Մ. Բ-յանի ընտանիքում կան 4 աշխատունակ մարդիկ: Սակայն եկեք տեսեք, որ նրանցից և ոչ մեկը չէր աշխատում: Ամբողջ ընտանիքը ապրում էր Մ. Բ-յանի կողմից սիստեմատիկ կերպով և խոշոր չափերով կատարվող սպեկուլյացիայից ձեռք բերված «վաստակով»: Այդ ընտանիքում կուտակվել էր զգալի հարստություն: Բայց ինչ ստացվեց. ստացվեց այն, որ Մ. Բ-յանը որպես սպեկուլյանտ և ձրիակեր ի վերջո դատա-



պարտվեց երկարամյա բանտարկության:
Սովետական դատարանը իր խիստ, բայց
արդարացի դատավճիռը կայացրեց Մ. Բ-
յանի նկատմամբ:

Վերցնենք Էջմիածնի շրջանի Մեյմանդար
գյուղում Մոլլա անունը վաստակած Ս. Տ.-
յանին: Նրա ընտանիքի 11 անդամներից
7-ը լիովին աշխատունակ են: Պետությու-
նը Ս. Տ-յանի ընտանիքին ապահովել է
բնակարանով, հողամասով ու աշխատան-
քով: Բայց այդ ընտանիքը բոլորովին չէր
աշխատում: Ս. Տ.-յանը իրեն հայտարարել
էր «սուրբ բժիշկ» և խաբեբայությամբ հս-
կայական գումարներ էր կորզում դյուրա-
հավատ հիվանդներից կամ նրանց հարա-
զատներից: Սովետական դատարանը դա-
տապարտեց նաև Ս. Տ.-յանին և կոնֆիս-
կացրեց հանցավոր ճանապարհով ձեռք
բերված գումարները:

Երբ թերթում ես նախկին պատասխանա-
տու վաճառող Ն. Կ.-յանի նկատմամբ հա-
րուցված ու ավարտված քրեական գործը,
մնում ես զարմացած: Նրա ընտանիքի 5
անդամներից 4-ը աշխատում են: Ընտանիքն
ունի 4 սենյակից բաղկացած բնակարան՝ իր
բոլոր հարմարություններով: Ընտանիքում
մուտք գործած օրինական եկամուտները

միանգամայն բավարար էին այդ ընտանիքում իսկական կուլտուրական կյանք կազմակերպելու համար։ Բայց նա դիմում է շարաշահումների, սիստեմատիկաբար գների խախտում է կատարում։ Շուտով նրան դատապարտում են բանտարկության։ Զրիակերության հակումներ ունեցող այդ անազնիվ մարդը դարձավ իր շրջապատի արգահատանքի ու ծաղրի առարկան։ Նրա ընտանիքը ծանր հարված ստացավ, թեև փոքր կամք և ազնվություն ունենալու դեպքում նա այդ վիճակի մեջ չէր ընկնի, չէր դատապարտվի և կշարունակեր երջանիկ կերպով ապրել իր կնոջ, երեխաների ու մյուս հարազատների հետ։

Զայրացուցիչ է Արտաշատի բնակիչ Ա. Վ.-յանի վարքագիծը։ Լինելով կոլտնտեսական, նա իր և իր ընտանիքի անդամների վաստակած աշխօրերի դիմաց, 1959 թվականին, զանազան մեծաքանակ սննդամթերքներից բացի, կոլտնտեսությունից ստանում է մոտ 45.000 ռուբլի դրամ։ Այդ գումարի մի մասով նա գնում է սեփական ավտոմեքենա։ Բայց եկեք ու տեսեք, որ Ա. Վ.-յանը այդ ավտոմեքենան ներկայումս օգտագործում է մասնավոր փոխադրումներ կատարելով և այդ մասին մեր միլիցիայի



օրգաններն իրենց տրամադրության տակ արդեն մի քանի արժանահավատ ապացույցներ ունեն։ Ա. Վ.-յանը իր այդ վարքագծով ազդել է իր կոլտնտեսական հարազատների վրա և սրանք այլևս նույն եռանդով չեն աշխատում կոլտնտեսությունում, այսինքն վարժվում են ձրիակերության։ Որն է Ա. Վ.-յանի և նրա նմանների ապագան, եթե նրանք շարունակեն իրենց հանցավոր գործունեությունը։ Վաղ թե ուշ, բայց անխուսափելիորեն նրանք նստելու են մեղադրական աթոռին և որպես հանցավոր ճանապարհով ձրիակերության համար միջոցներ կուտակողների դատվելու ու դատապարտվելու են։

Զրիակերության դրսևորման ձևերից մեկն էլ այն է, որ որոշ մարդիկ խուսափելով հանրօգուտ աշխատանք կատարելուց, ապրում են իրենց մերձավոր կամ հեռավոր հարազատների արդար քրտինքով վաստակած միջոցների հաշվին։ Կան առանձին երիտասարդներ, որոնք թեև լիովին առողջ են ու աշխատունակ, բայց խուսափում են կոլտնտեսություններում, սովխոզներում, գործարաններում, ֆաբրիկաներում, նորակառույցներում, հանքերում կամ արհեստանոցներում աշխատելուց։ Նրանք խուսափում

են թե ֆիզիկական և թե մտավոր աշխատանքից։ Կան միջնակարգ, նույնիսկ բարձրագույն մասնագիտական կրթություն ստացած շատ երիտասարդներ, որոնք, հրաժարվելով անգամ իրենց մասնագիտությամբ շրջաններ աշխատանքի մեկնելուց, գերադասում են աննպատակ կերպով թափառել Երևանի, Լենինականի, Կիրովականի և ռեսպուբլիկայի մյուս քաղաքների փողոցներում ու անհոգ կերպով ապրել իրենց հարազատների հաշվին։ Դրանք մարդիկ են, որոնց ծնողները մանուկ հասակում գուրգուրելով ու սիրելով աշխատանքի չեն վարժեցրել նրանց և, ինչպես ասում են, նստեցրել են իրենց վզին։ Մեծանալով այժմ նրանք դարձել են անբաններ ու դատարկապորտներ և չեն ուզում աշխատել։

Կան որոշ մարդիկ էլ, որոնք, հովանավորվելով զանազան բարի քեռիների կողմից, ձրիակերության համար աղբյուրներ ստեղծելու և ձրիակերներ դառնալու բոլորովին յուրահատուկ ուղի են բռնել։ Ճիշտ է, այդ մարդկանց թիվը քիչ է, բայց նրանք կան։ Դրանք մարդիկ են, որոնք ձևականորեն աշխատում են սովետական պետական կամ հասարակական այս կամ այն ձեռնարկության կամ հիմնարկության մեջ։ Նրանք



հրամանով ձևակերպված են որպես «աշխատողներ»։ Պաշտոնյա քեռիները նրանց ապահովել են հնարավոր վտանգներից ու ձախորդություններից։ Բայց իրականում նրանք կամ չեն աշխատում կամ իրենց «հրամանները» շահադիտական նպատակներով չարաշահում են՝ Եղել են դեպքեր, երբ որպես ավտովարորդ, պահակ, անձնական քարտուղար, հաշվետար, գանձապահ, ցրիչ և այլն «ձևակերպված» «հրամանագրված» անձինք իրականում ոչ ավտոմեքենա են տեսնում, ոչ պահակակետ, ոչ անձնական քարտուղարի աթոռ, ոչ ցրիչի պայուսակ և ոչ էլ գանձարկղ։ Բայց դրանց փոխարեն ունենալով աշխատողի վկայական («հրաման») բացահայտ կերպով զբաղվում են ապօրինի կամ հանցավոր գործունեությամբ՝ սպեկուլյացիայով, մասնավոր ավտոմեքենաներով փոխադրումներ կատարելով, խարդախությամբ և այլն։ Նրանք ձրիակերության համար նախապայմաններ են ստեղծում ու միջոցներ են կուտակում։ Դրանք մարդիկ են, որոնց աշխատանքի մասին եղած հրամանները քող են իրենց իսկական դեմքը՝ ձրիակերների ու պորտաբույծի դեմքը, ծածկելու համար։ Մեր խնդիրն է հետևողական պայքար ծավալել նաև

նման անձանց ու նրանց հովանավորող քեռիների գործունեության դեմ։

Մենք ապրում ենք մի ժամանակաշրջան, երբ մեր երկիրը յոթ մղոնանոց քայլերով առաջ է գնում կոմունիզմի շինարարության լուսավոր ճանապարհով։ Սովետական հերոս ժողովուրդը ամենուրեք անձնուրաց աշխատանքի աննախընթաց օրինակներ է ցույց տալիս։ Այդ աշխատանքի շնորհիվ բազմապատկվում է մեր հանրային հարստությունը, բարձրանում է մեր կուլտուրան, էլ ավելի է ազնվանում մեր հոգին։ Հեռու չէ այն օրը, երբ մենք մեր դրոշի վրա պետք է գրենք կոմունիզմի սկզբունքը՝ «յուրաքանչյուրից ըստ նրա ընդունակության, յուրաքանչյուրին ըստ նրա պահանջի»։ Նման իրադրության պայմաններում ձրիակերությունը, հանրօրեն օգտակար աշխատանքից խուսափելը, հասարակության, պետության կամ առանձին անհատների հաշվին ապրելը ոչ միայն հակաբարոյական, այլև հակահասարակական երևույթներ են։ Մենք ընդունակ ենք և կարող ենք կարճ ժամանակամիջոցում լիկվիդացնել այդ երևույթները, առմիշտ ջնջել մեր հասարակության առողջ օրգանիզմի վրա երևացող բծերը՝ Մենք այդ կանենք։ Մենք պարտավոր ենք այդ անել։



# ԱՌԱՍՊԵԼ ՔՐԻՍՏՈՍԻ ՄԱՍԻՆ

Ա. ՍՎԱՍՅԱՆ

Մոտ երկու հազար տարի է, որ մարդկության միտքը զբաղեցված է մի առասպելական էակով, որին կոչում են Հիսուս Քրիստոս և համարում են քրիստոնեական եկեղեցու հիմնադիր։

Այս հարցը պատմագիտության կողմից երկար ժամանակ ուսումնասիրվել է, և վերջնական եզրակացությունը եղել է այն, որ 1961 տարի առաջ, Հռոմի տիրակալության Պաղեստինի մարզում, Հիսուս Քրիստոս անունով ոչ միայն կույսից ու հրաշքով, այլ և ընդհանուր կարգով ծնված մարդ գոյություն չի ունեցել, որ Հիսուս Քրիստոսը մեկն է այն երևակայաստեղծ աստվածներից, որոնց թիվը ըստ գիտական ուսումնասիրությունների տվյալների հասնում է շուրջ 37 հազարի։

Այժմ համառոտակիորեն բերենք գիտական այն փաստերը, որոնք ժխտում են Քրիստոսի պատմականությունը։

Մարդկային հասարակության մեջ հեռավոր ժամանակներից ի վեր կա մի մնայուն կարգ՝ խնամքով պահպանել պատմական դեմքերի հուշարձանները։ Աշխարհի թանգարանները լեփ-լեցուն են հուշարձաններով, իսկ քրիստոսի և ոչ մի հուշարձան չկա։

— Ի՞նչպես,— կբողոքեն եկեղեցականները,— մտեք քրիստոնեական եկեղեցիները և դուք կտեսնեք այնտեղ բազմաթիվ «սուրբ մասունքներ»։ Դուք կտեսնեք Քրիստոսի արտասուքը, արյունը, մորուքի մազը, շղթաները և այն խաչի կտորները, որի վրա խաչել են նրան։

«Սուրբ մասունքները» շատ վաղուց են քննության առնվել և պարզվել է, որ նրանք շինծու են։ Օրինակ, եկեղեցիներում ցուցադրվող Քրիստոսի խաչի կտորները այնքան շատ են, որ ըստ Բեռլինի համալսարանի պրոֆեսոր Արթուր Դրևսի տվյալների դրանց փոխադրման համար կպահանջվեն մի քանի երկաթուղային վագոններ։ Շղթաներն ու պարանները այնքան շատ են, որ նրանցով կարելի է շղթայել Երուսաղեմ քաղաքը։ Քրիստոսի մորուքին վերագրվող մազերը, բացի անչափ շատ լինելուց, նաև բազմագույն են, որովհետև յուրաքանչյուր ազգության եկեղեցի մազերի ընտրությունը



կատարել է ըստ իր ազգի մազերի գույնի, և որ վանքերում ու եկեղեցիներում պահվում է մի քանի դույլ արյուն ու արտասուք, այնքան արտասուք, որ եթե Հռոմի պապն ու մյուս եկեղեցականները հավաքվելով մի ամբողջ տարի լաց լինեն քրիստոնեության խախտված հեղինակության վրա, դարձյալ այդքան արտասուք չեն թափի։

Պատմության մատենադարանները լիքն են ձեռագրերով, որոնք հին դարերի խոշոր դեմքերի գրչին են պատկանում և նրանց գոյության իրեղեն ապացույցն են։ Սակայն կա՞ արդյոք, թեկուզ երկտող ձեռագիր, որ գրված լիներ Քրիստոսի ձեռքով։ Ոչ։ Կան միամիտ մարդիկ, որոնք պնդում են, թե 1961 տարի առաջ գրի մասին խոսք լինել չէր կարող։ Այդ ընկերները սխալվում են, որովհետև մատենադարաններում կան ձեռագրեր թե Քրիստոսի ժամանակակից և թե ավելի առաջ ապրած դեմքերի։ Կան նաև ավելի միամիտները, որոնք պնդում են, թե Քրիստոսը անգրագետ է եղել։ Բայց չէ՞ որ ավետարաններում գրված է, որ Հիսուսը 12 տարեկան հասակում Երուսաղեմի վանքի պատերին գրել է հրե տառերով։ Զուզեցինք հրե տառերը, թող գրեր մագաղաթի վրա։ Քրիստոնեական աստվածաբանության մեջ

խոսվում է նաև այն մասին, որ Քրիստոսը նամակագրություն է ունեցել թագավորների հետ, օրինակ, հայտնի է Հայոց Աբգար թագավորի նամակը, որով նա խնդրում է Հիսուսին գալ Հայաստան, բուժել իրեն «բոր» հիվանդությունից և տարածել քրիստոնեությունը Հայաստանում։ Ինչ անհեթեթություն... Ինչպես երևում է, նամակի հեղինակները չեն իմացել, որ Հայաստանը Աբգար անունով թագավոր չի ունեցել։

Ինչպես հայտնի է, Քրիստոսին վերագրված դարում բազմաթիվ պատմագետներ են եղել։ Օրինակ՝ հույն նշանավոր պատմաբան Պլուտարքոսը, հրեա նշանավոր պատմագետ Հովսեփ Ֆլավիոսը, հռոմեացի նշանավոր պատմաբան Տացիտոսը և ուրիշները։ Նրանց երկերում արտացոլում են գտել մինչև իսկ երկրորդական դեմքերը, բայց Քրիստոսի մասին ոչինչ չկա։ Ինչո՞ւ. որովհետև նրանք Քրիստոսին չեն տեսել, ուստի և ոչինչ չեն գրել։ Օրինակ, Մաթևոսի ավետարանի 27 գլխում ասված է, որ երբ Քրիստոսը շունչը փչեց, երկիրը շարժվեց, վանքերի և տների պատերը ճաքեցին, մեռելները հարություն առան և ի տես եկան իրենց հարազատներին։

Պատկերացնում ե՞ք, թե ինչ իրարանցում



կառաջանար... Թագավորները հարություն առնելով՝ պիտի պալատ գային և իրենց գահի վրա մեկ ուրիշին տեսնելով՝ անասելի վեճեր, պատերազմներ պիտի սկսեին։ Խանդոտ ամուսինը տուն գալով՝ իր կնոջ նոր ամուսնու հետ տուր ու դմբոց պիտի սկսեր ու էլի բազմաթիվ միջադեպեր։ Մինչդեռ բնագետ Պլինիոս ավագը իր «բնագիտության պատմություն» երկի մեջ գրի առնելով բնության անգամ աննշան տարրերքները, այդ մասին ոչինչ չի գրել։ Ինչո՞ւ... Չի տեսել, չի գրել։

Այսպիսով տեսանք, որ Քրիստոսից հուշարձաններ և ձեռագրեր չկան, պատմագետները նրա մասին ոչինչ չեն ասել։ Ապա ինչպե՞ս է ստեղծվել Քրիստոսը։

Քրիստոսի ծննդյան վկայականը այսպես կոչված Նոր Կտակարանի՝ Մաթևոսի, Ղուկասի, Մարկոսի և Հովհաննու չորս ավետարաններն են։

«Հաստատ կարելի է ասել,— գրում է Ֆր. Էնգելսը,— որ Հիսուս Քրիստոսի գոյությունն ապացուցող ավետարանները զուրկ են պատմական ամենատարրական ճշմարտությունից։ Նրանք Քրիստոսի պատմականությունը ոչ թե հաստատում, այլ ժխտում են»։

Եկեք, հիմք ընդունենք էնգելսի այս հայտարարությունը, թերթենք ավետարանները և տեսնենք, թե ինչ են ասում նրանք Քրիստոսի մասին։

— Ո՞վ է եղել Քրիստոսի պապը,— այս հարցին ավետարանները տալիս են հակասական պատասխաններ։ Ըստ ավետարաններից մեկի նրա պապի անունը Հակոբ է եղել, ըստ երկրորդի՝ Եսայ, իսկ ըստ երրորդի... Սակայն հարմա՞ր է արդյոք մեկ տատիկին ծանրաբեռնել բազում պապիկներով։

— Իսկ ո՞վ է եղել նրա հայրը,— ավետարաններից մեկը ասում է, որ ինքն աստվածն է նրա հայրը, մյուսը թե՝ սուրբ հոգին, երրորդը թե՝ այդ աստվածաշինարարության մեջ ինչ-ինչ մասնակցություն է ունեցել նաև Գաբրիել հրեշտակապետը, իսկ չորրորդը պնդում է, որ նրա հայրը հյուսն Հովսեփն է եղել։ Գուցե այս վերջին «հայրն» է պատճառը, որ բապտիստները իրենց համայնքներին ուղղած գաղտնի նամակի մեջ խորհուրդ են տալիս, որ «աթեիստների հետ վիճելիս պնդել, թե Հիսուսը պրոլետարական ծագում է ունեցել, որ նրա հայրը հյուսն է եղել, իսկ մայրը՝ արհեստավորի աղջիկ»։

— Իսկ ո՞ր քաղաքում է ծնվել Քրիս-



տոսը։— Նազարեթ քաղաքում,— պատասխանում են ավետարանները։ Մինչդեռ ըստ աշխարհագրական տվյալների՝ Նազարեթ քաղաքը Քրիստոսի ծննդյանը վերագրված ժամանակում դեռ գոյություն չի ունեցել։

Իսկ ո՞ր էպոխայում է ծնվել Քրիստոսը։

— Հերովդես արքայի օրերին,— պատասխանում են ավետարանները։ Մինչդեռ հրեական Հերովդես արքան ըստ պատմական տվյալների մեռել է Քրիստոսի ծննդից 16 տարի առաջ։

Եվ էլի բազմաթիվ հակասություններ թե կենսագրության և թե նրան վերագրված ուսմունքի մեջ։

Հարց է ծագում, ավետարանների այս հակասական տվյալների հիման վրա կարող է արդյո՞ք պատմագիտությունը վավերացնել Հիսուս Քրիստոսի պատմական անձնավորություն լինելու փաստը։ Իհարկե, ոչ։

Վերոհիշյալ օբյեկտիվ փաստարկումները կարդալուց հետո մարդիկ կարող են կարծել, որ ավետարանիչներն են եղել Քրիստոսի կենսագրությունը հյուսողները։ Ոչ։ Այն, ինչ գրված է ավետարաններում, իրենից ինքնուրույն ոչինչ չի ներկայացնում։ Քրիստոսի առասպելը հյուսելիս ավետարանների հեղինակները օգտվել են հե-

թանոսական ժողովուրդների մեջ պաշտամունք դարձած առասպելաստեղծ բազմաթիվ «փրկիչների» կենսագրություններից։

Երբ Հին Արևելքի արևապաշտ, երկրագործ ժողովուրդների մոտ լայնածավալ ու հզոր պետություններ առաջացան, Արև աստվածը մեծարվեց երկրային թագավորի կերպարով, որպես երկնային ամենակարող թագավոր։ Ճիշտ է, տարբեր ժողովուրդների մեջ Արև աստծուն տարբեր անուններ էին տալիս, սակայն բոլորի համար նա գերբնական էակ էր, որը ծնվում, տառապում, մեռնում և հարություն էր առնում։ Արև աստծո ծննդյան և հարության (զատկի) տոները, Հին Արևելքի երկրագործները տոնում էին հանդիսավորապես։ Ծնունդը տոնվում էր ձմեռային արևկայության օրը, այսինքն դեկտեմբերի 25-ին կամ հունվարի 6-ին, երբ տեղի էր ունենում լուսնի առաջին լրումը, իսկ հարությունը-զատիկը՝ գարնան զարթոնքի օրերին։

Արև աստծո շուրջը հյուսվող առասպելներն ընդօրինակելով, Հնդկաստանի ժողովուրդները պատկերել են իրենց ծնվող, տառապող, մեռնող և հարություն առնող Բուդդա աստծուն, ասորա-բաբելոնական ժողովուրդները՝ Թամմուզին ու Մարդուկին, պարսիկները՝ Միհրին, եգիպտացիները՝ Օզիրիսին, Սիրիան՝ Ադոնիսին, Հունաստանը՝ Դիոնիսին և այլն։ Վերոհիշյալ «փրկիչ» աստվածները, բոլորն էլ ծնվել, տառապել, մեռել ու հարություն են առել։

Տառապող, տանջամահ եղած ու հարություն առած այս աստվածների մեջ կամազրկված ժողովուրդները որոնել են իրենց մխիթարանքը, ձգտել են երևակայական մի աշխարհի, ուր չլինեն տառապողներ։

Երբ ծագեց քրիստոնեական կրոնը, հենց այս աստվածների մասին եղած առասպելները հիմք ծառայեցին քրիստոնեական եկեղեցուն՝ Հիսուս Քրիստոսի առասպելը հյուսելու և այն իշխող դասակարգերի շահերին ծառայեցնելու համար։

Պարզ է ուրեմն, որ Հին Արևելքի ժողովուրդների Արև աստծո մասին ունեցած առասպելներից է, որ հյուսվել է առասպելը Քրիստոսի մասին։

Քրիստոսի ծննդյան տոնի օրերին քրիստոնյա եկեղեցականները առաջ են քաշում «բոլոր մարդիկ եղբայրներ են» լոզունգը և փրփուրը բերաններին համոզում են, որ կապիտալիստն ու բանվորը, կալվածատերն ու գյուղացին եղբայրներ են։ Վերջերս «Ջոնտագ» կոչված արևմտագերմանական թեր-

թում հրապարակվել է նկարազարդ մի հոդված, որտեղ պատկերվում է, թե ինչպես ծննդյան տոնի օրերին շունն ու կատուն եղբայրաբար ուտում են միևնույն ափսեից։ Նկարի տակ գրված էր. «Շունն ու կատուն խաղաղ եղբայրասիրությամբ, միևնույն ամանից վայելում են ծննդյան տոնի սուրբ ճաշը»։ Հետևությունը պարզ է, եթե շունն ու կատուն խաղաղությամբ ուտում են մի ափսեից, մարդիկ առավել ևս պիտի ձըգտեն եղբայրներ լինելու և հանուն Քրիստոսի սիրելու մերձավորներին, թեկուզ և նրանք շահագործողներ լինեն։

Դեռ շատ չի անցել այն տարիներից, երբ գերմանական ֆաշիզմի գաղափարախոսները Վատիկանի սուրբ հայրերի համաձայնությամբ թե դպրոցական դասագրքերում և թե մամուլի էջերում Ադոլֆ Հիտլերին 20-րդ դարի Քրիստոս հռչակեցին։ Նրա «սրբապատկերը» տպագրելով միլիոնավոր օրինակներով՝ տարածեցին օկուպացված երկրներում և արտոնություններ խոստացան այն հավատացյալներին, որոնք Հիտլերի ծննդյան օրերին ծնկաչոք կխոնարհվեին մարդկային ցեղի այդ զազրելի թշնամու առջև։ Ֆաշիստների և Վատիկանի կողմից Հիտլերի քրիստոսացումը արդյոք չի՞



հիշեցնում Հռոմի կայսր Կալիգուլային, որը իր ձին նստած հռոմեական սենատ մտնելով, պահանջեց, որպեսզի իր սիրելի ձիուն սենատոր ընտրեն։ Այո, Կալիգուլան իր ձին էր գնում քվերակության՝ սենատոր դարձնելու համար, իսկ Վատիկանը Հիտլերին էր մտցնում աղոթատուն որպես 20-րդ դարի Քրիստոսի։

Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի առաջնորդ, հանճարեղ Վ. Ի. Լենինը ահա թե ինչ է գրել քրիստոնեական եկեղեցու գաղափարախոսության առթիվ։ «Ոչ մի գրքույկով և ոչ մի քարոզով չի կարելի պրոլետարիատին լուսավորել, եթե նրան չլուսավորի իր սեփական կռիվն ընդդեմ կապիտալիզմի մութ ուժերի։ Երկրի վրա դրախտ ստեղծելու համար ճնշված դասակարգի մղած այդ իսկապես ռևոլյուցիոն կռվի միասնականությունն ավելի կարևոր է մեզ համար, քան պրոլետարների կարծիքների միասնականությունը երկնային դրախտի մասին»։

# ՍՊԱՌԱՋԻՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄՐՑԱՎԱԶՔԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐ ՄԱՍՍԱՆԵՐԸ*)

Վ. Սապոժկով

Պատմությունը դեռ երբեք չի իմացել նյութական և մարդկային միջոցների այսպիսի վատնում։ Միայն 1950 թվականի հուլիսի 1-ից մինչև 1959 թվականի հունիսի 30-ը ամերիկյան արդյունաբերողները Պենտագոնի ողորմածությամբ իրենց գրպաններն են դրել 228,400 միլիոն դոլլար։ Այդպիսի միջոցներով կարելի էր տափաստանները վերածել ծաղկաստանների։ Միայն մեկ ատոմային ավիակիրն այնքան արժե, որքան 2.750 հազար տոննա ցորենը, մի ռեակտիվ ռմբակոծիչը՝ այնքան, որքան 100 հազար տոննա շաքարը, ռեակտիվ սարքով սուզանավը՝ այնքան, որքան 55 հազար տոննա միսը։ Իսկ այդ նույն Ամերիկայում լայնորեն տարածված է աղքատությունը։ Արհմիութենական «Լեյբորս էկոնոմիկ ռեվյու» ամսագիրը հաղորդել է, որ 1960 թվականի կեսերին ԱՄՆ-ում 7,5 միլիոն ամերիկյան քաղաքացի իր գոյությունը պահպանել է ողորմություններ հաշվին։ Այս նույն ամսագիրը հաղորդել է, որ ամերիկացիների 20 տոկոսից ավելին, այսինքն ավելի քան 40 միլիոն մարդ, միջոցներ չունի ապրուստի անհրաժեշտ մինիմումը բավարարելու համար։ Այս 40 միլիոնը, ընդգծում է ամսագիրը, «ապրում է կամ աղքատության եզրին, կամ աղքատության մեջ»։

*) Սկիզբը տես «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1960 թ. № 24-ում։



Վերը մենք անդրադարձանք բնակարանային շինարարությանը՝ մարդկանց աշխատանքով ապահովված լինելու առումով։ Բայց բնակարանային շինարարությունը ոչ միայն աշխատանք է նշանակում, այլ նաև կյանքի բարելավում՝ Ամերիկայի շատ հասարակ մարդկանց համար։ «Նյու-Յորք ուորլդ տելեգրամ էնդ սան» թերթը վերջերս տպել էր ականատեսի պատմածը երկնաքերծ շենքերի և աղքատության քաղաքի հետնախորշերից մեկի մասին։ «Ֆրանցիսկոն և նրա 7 փոքր երեխաները,— հաղորդում է ականատեսը,— ծվարում են մի կեղտոտ, օդափոխումից զուրկ երկսենյականոց բնակարանում...»։ «Բնակարանում վխտում

են առնետները։ Այդ ամբողջ հինգ հարկանի շենքը իրենից ներկայացնում է մի իսկական աղբարկղ»։

Եթե ԱՄՆ-ի ուղղակի ռազմական ծախսերից 40 միլիարդ դոլլարը տրամադրվի բնակչության պահանջմունքների բավարարմանը, ապա կարելի կլինի միաժամանակ կառուցել 1.320 հազար նոր շենք, 500 նոր հիվանդանոց, սարքավորել և պահել 2 հազար սպորտային հրապարակ, բացել 2 հազար նոր դպրոցներ, աշխատանք տալ 200 հազար ուսուցիչների, 10 միլիարդ դոլլարով իջեցնել բնակչությունից գանձվող հարկերը։

Բերված փաստերը պերճախոս կերպով ասում են, որ ռազմական ծախսերը միջոցների զուր վատնում է, մարդկային և նյութական վիթխարի ռեսուրսները քամուն տալ է, առանց որևէ օգտակար արտադրանք ստեղծելու։ Ուստի զինաթափումը աշխատավորների և ամենից առաջ ամբողջ բանվոր դասակարգի կյանքի մակարդակի բարձրացման ճիշտ ուղիներից մեկն է։

## ՀԱՐԿԵՐԸ ԿԼԱՆՈՒՄ ԵՆ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՎԱՍՏԱԿԻ ԵՐՐՈՐԴ ՄԱՍԸ

Տարեցտարի շարունակվում է սպառազինությունների մրցավազքը և բյուջեի ավելի



շատ մասը հավաքվում է մահվան զենք վաճառողների ձեռքը։ Իսկ ԱՄՆ-ի կառավարությունը, որը մոնոպոլիստների վստահելի կոմիտեն է, ժլատություն չի անում ռազմական հատկացումների գործում։ Անցյալ ֆինանսական տարում ռազմական հատկացումները կլանեցին ֆեդերալ բյուջեի 58,3 տոկոսը, իսկ պետական փոխառությունների ծախսերի հետ միասին, որոնք հիմնականում կապված են սպառազինությունների մրցավազքի հետ, երկրի բյուջեի ավելի քան 70 տոկոսը։ Այո, և ինչու ժլատություն անել, չէ՞ որ հարկերի առյուծի բաժինը վճարում են աշխատավորները։ 1958—1959 բյուջետային տարում հարկային մուտքը (առանց կորպորացիաների եկամտային հարկի), կազմում էր ԱՄՆ-ի պետական եկամուտների ընդհանուր գումարի 70 տոկոսը։ Ռազմական կորպորացիաները ամեն տարի ավելի ու ավելի շատ միջոցներ են կլանում, և ԱՄՆ-ի կառավարությունը փնտրում է մոնոպոլիաների աճող ախորժակը բավարարելու համար աշխատավորների միջոցները ծծելու նոր ուղիներ։ Վերջին ժամանակներս ամերիկյան կառավարությունը չհարկվող մինիմումը իջեցնելու ճանապարհով ընդարձակում է հարկատուների շրջանակը։ Դրա

հետևանքով եկամտահարկ վճարողների թիվը «Մենեջին օֆ Ուոլլ Ստրիտ» ամսագրի հաղորդագրությամբ արդեն 1955 թվականին հասել էր 57,8 միլիոն մարդու, 1940 թվականի 7,5 միլիոն մարդու դիմաց։ Այժմ Ամերիկայում եկամտահարկ են գանձում նույնիսկ հաշմանդամներից և ծերերից։ Աշխատավորների միջոցները կողոպտելու և ռազմական գանձարանը մտցնելու մյուս աղբյուրը անուղղակի հարկերն են, որոնցով հարկվում են տառացիորեն բոլոր տեսակի սպառողական ապրանքները։

Ուղղակի և անուղղակի հարկերը կլանում են աշխատավորների վաստակի մոտ երրորդ մասը։ Դա նշանակում է, որ յուրաքանչյուր երեք ամսից մեկ ամիսը բանվորը ստիպված է աշխատել հանուն թնդանոթային թագավորների հարստացման։ «Կապիտալիստական երկրների հարկային բարդ մեխանիզմը, ասել է Ն. Ս. Խրուշչովը, մի հսկա պոմպի նման, միջոցները աշխատավոր մասսաների գրպանից վերամղում է մոնոպոլիաների լայն գրպանը, որոնք հսկայական շահույթներ են դիզում հիմնականում հարկերի հաշվին բարձր գներով վճարվող ռազմական պատվերներից»։





## Հարկային թալանը ԱՄՆ-ում




Ամերիկյան իմպերիալիստները ունենալով իրենց ձեռքին իշխանություն, մշակել և կիրառում են հարկային այնպիսի սիստեմ, որը լիակատար հնարավորություն է տալիս շա-




հագործողներին հարկերի միջոցով թալանել աշխատավորներին։ ԱՄՆ-ում գոյություն ունեն ֆեդերալ կամ համապետական, նահանգական, տեղական, քաղաքային և բազմաթիվ այլ հարկեր։ Միայն հացի վրա դրված է 157 տեսակ հարկ, կաթի վրա՝ 78 տե-




սակ, հագուստի վրա՝ 189 տեսակ։ Հաշվումները ցույց են տալիս, որ միջին ամերիկացին հարկերը վճարելու համար մոտ 5 ամիս ձրիաբար աշխատում է։ Հենց բուրժուական տնտեսագետների հաշվումներով, ուղղակի և



անուղղակի հարկերի գանձման պատճառով ամերիկյան միջին ընտանիքի եկամուտը պակասում է 30 տոկոսով։





Նշումների համար

Նշումների համար

## СОДЕРЖАНИЕ

Стр.

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



### НА НАУЧНО-АТЕИСТИЧЕСКИЕ ТЕМЫ



### НА МЕЖДУНАРОДНЫЕ ТЕМЫ



### Уголок наглядных материалов




Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Խմբագրության հասցեն—Երևան, ՀԿԹ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ. Հեռախոս՝ 2—52—78։

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում (փաստաթղթերի և նյութերի ժողովածու), գինը՝ 1 ռ. 12 կոպ.։*

Գ. Մ. Խաչատրյան, Ա. Լ. Հարությունյան— *Սովետահայ կուլտուրան սոցիալիզմի նվաճումն է, գինը՝ 9 կոպ.։*

Օ. Ա. Ռեուտով— *Օրգանական սինթեզը և նրա հեռանկարները, գինը՝ 16 կ.։*

Ռուբեն Զարյան— *Ադամյան— Արվեստը— գինը՝ 1 ռ. 18 կոպ.։*

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении

БЛОКНОТ АГИТАТОРА

№ 1 1961 г.

ՎՖ 00903 Պատվեր 816 Տպաքանակ 9150

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ արդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը՝ 3 ·կոպ.